Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 19 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

էջ

ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՅՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40 տարին . . . . . 1*

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

*Թեմաներ և գրականություն Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 40-ամյակի մասին ագիտատորների զրույցների համար . . 45*

---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:*





# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 40-ՏԱՐԻՆ

*1957 թվականի նոյեմբերի 7-ին, Սովետական Միությունը, սոցիալիզմի լագերի երկրների աշխատավորները և ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը նշելու են Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պանծալի 40-ամյակը:*

*Քառասուն տարի առաջ, մեր երկրի բանվոր դասակարգը, դաշինք կնքած չքավոր գյուղացիության հետ, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ռևոլյուցիայի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ տապալեց կալվածատերերի ու կապիտալիստների տիրապետությունը և ստեղծեց բանվորների ու գյուղացիների աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը:*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի ճանապարհին կարևորագույն պատմական էտապ էր փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան և պարտիայի վիթխարի աշխատանքի հետագա ամբողջ շրջանը,*







ընդհուպ մինչև պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը։

Լենինը գտնում էր, որ սոցիալիստական ռևոլյուցիայի զարգացումը կարող է ընթանալ խաղաղ ճանապարհով, և բոլշևիկների պարտիան ռևոլյուցիայի խաղաղ զարգացման գիծ էր վարում։ Սակայն կալվածատերերն ու բուրժուազիան, օգտագործելով մենշևիկների ու էսեռների դավաճանությունը, իրենց ձեռքը գցեցին իշխանությունը և զինված արշավանք սկսեցին ռևոլյուցիոն ժողովրդի դեմ։

1917 թվականի հուլիսյան դեպքերից հետո փոխված իրադրության և դասակարգային ուժերի փոխհարաբերակցության համապատասխան, պարտիան փոխեց իր տակտիկան և զինված ապստամբության կուրս վերցրեց։ Պարտիայի 6-րդ համագումարը վճռական հակահարված տվեց տրոցկիստներին, բուխարինականներին, լենինիզմի ու ռևոլյուցիայի բոլոր հակառակորդներին, որոնք հանդես էին գալիս սոցիալիստական ռևոլյուցիայի կուրսի դեմ, խոր և բազմակողմանիորեն հիմնավորեց պարտիայի քաղաքական գիծը՝ զինված ապստամբության նախապատրաստման և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման համար, պարտիային և բանվոր դասակարգին զինեց սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի մարտական ծրագրով։



Հաղթահարելով հակառևոլյուցիայի, ինչպես նաև կապիտուլյանտների ու թերահավատների (Զինովև, Կամենև) կատաղի դիմադրությունը, Կոմունիստական պարտիան բանվոր դասակարգին և աշխատավոր գյուղացիությանը գրոհի տարավ բուրժուազիայի դեմ և ապահովեց ռևոլյուցիայի հաղթանակը։ Ռևոլյուցիայի հաղթանակի հաջորդ օրը Սովետների Համառուսական երկրորդ համագումարի ամբիոնից հնչեց և ամբողջ աշխարհով մեկ տարածվեց բոլոր երկրների պրոլետարների և աշխատավոր մասսաների առաջնորդ Վ. Ի. Լենինի ձայնը՝ մարդկության պատմության մեջ նոր դարագլխի՝ կապիտալիստական ստրկությունից բոլոր աշխատավորների ազատագրման և սոցիալիզմի դարագլխի սկսվելու մասին։

Իրականացնելով հաղթական սոցիալիստական ռևոլյուցիան, Կոմունիստական պարտիան մեր երկիրը փրկեց ազգային կործանումից, նրան ազատեց համաշխարհային իմպերիալիզմից կախում ունեցող կիսագաղութային երկրի վիճակից և սովետական ժողովրդին դուրս բերեց մարդկության պատմության մեջ դեռևս չտեսնված սոցիալիստական վերափոխումների լայն ճանապարհը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ պատմության մեջ առաջին ան-

գամ ժողովուրդը դարձավ իր երկրի տերը, ֆաբրիկաները, գործարանները, երկաթուղիները, հողը և նրա ընդերքը դարձան աշխատավորների սեփականություն։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան պատմության մեջ առաջին ռևոլյուցիան է, որն աշխատավորներին տվեց ոչ միայն քաղաքական ու տնտեսական իրավունքներ, այլև նյութական բարիքներ, նրանց համար բացեց ազատ ու երջանիկ կյանքի ուղին, վերջ տվեց մարդու կողմից մարդու շահագործման, ամեն տեսակ սոցիալական ու ազգային ճնշման։ Սովետական մարդիկ իրավամբ հպարտանում են այն բանով, որ իրենց բախտ վիճակվեց նոր դարագլուխ բացելու մարդկության պատմության մեջ։

Վ. Ի. Լենինը գրել է. «...մենք իրավունք ունենք հպարտանալու և հպարտանում ենք նրանով, որ մեզ երջանկություն բաժին ընկավ սկսելու Սովետական պետության կառուցումը, սկսելու դրանով համաշխարհային պատմության նոր դարաշրջան, այն նոր դասակարգի տիրապետության դարաշրջանը, որը ճնշված է բոլոր կապիտալիստական երկրներում և ամենուրեք գնում է դեպի նոր կյանք, դեպի հաղթանակ բուրժուազիայի դեմ, դեպի պրոլետարիատի դիկտատուրան, դեպի մարդկության ազատագրումը կապիտալի



լծից, իմպերիալիստական պատերազմներից» (Լենին, Երկեր, հատոր 33, էջ 42)։

Ահա թե ինչու ռևոլյուցիայի հաղթանակից անմիջապես հետո սովետական պետության շուրջը սկսեցին համախմբվել և միավորվել կապիտալիզմի դեմ, հանուն սոցիալիզմի և դեմոկրատիայի, իրենց ազգային ազատագրության համար պայքարող բոլոր ուժերը։ Բայց տապալված շահագործող դասակարգերը, միջազգային իմպերիալիզմի օգնությամբ և գլխավորությամբ քաղաքացիական պատերազմի հորձանուտի մեջ քաշեցին սովետական երիտասարդ ռեսպուբլիկան, նպատակ ունենալով իր բնի մեջ խեղդել, թույլ չտալ, որ նա ոտքի կանգնի և ամրանա։ Հին աշխարհի բոլոր զառամած ուժերը, միջազգային իմպերիալիզմը, ներքին հակառևոլյուցիան միավորվեցին և խաչակրաց արշավանք սկսեցին մեր երկրի դեմ, հյուսիսից և հարավից, արևմուտքից ու արևելքից նրան շրջափակելով ռազմաճակատների կրակե օղակի մեջ։

Սովետական մարդիկ անհավասար պայքարում անասելի դժվարություններ հաղթահարելով ջախջախեցին սպիտակգվարդիականների և ինտերվենտների միացյալ ուժերը, հերոսաբար պաշտպանեցին իրենց

Հայրենիքը՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը։

Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռնամուխ եղավ խաղաղ, սոցիալիստական շինարարության, տնտեսապես հետամնաց Ռուսաստանը առաջավոր, հզոր սոցիալիստական տերության վերածելու՝ Վ. Ի. Լենինի մշակած և գիտականորեն հիմնավորած ծրագրի, մեր երկրում սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման հանճարեղ պլանի կենսագործմանը։ Այդ ծրագիրը նախատեսում էր՝ երկրի սոցիալիստական ինդուստրացում, ծանր արդյունաբերության բազմակողմանի զարգացում, ամբողջ ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացում, սոցիալիստական հիմունքներով երկրի գյուղատնտեսության վերափոխում, կուլտուրական ռևոլյուցիայի իրականացում։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, որին գլխավորում էր Վ. Ի. Լենինը, իսկ նրա մահից հետո, Ի. Վ. Ստալինը, հաղթահարեց բոլոր դժվարությունները, ընկճեց դասակարգային թշնամիների դիմադրությունը, գաղափարապես մերկացրեց ու ջախջախեց պարտիայի ներսում եղած հակալենինյան խմբերը, կազմակերպեց բանվոր դասակարգին ու աշխատավոր գյուղացիությանը և նրանց



տարավ սոցիալիստական հասարակարգի կառուցման լենինյան ուղիով։ Իր առջև չունենալով օրինակներ ու նմուշներ, չվախենալով ձախորդություններից ու դժվարություններից, սովետական ժողովուրդը համարձակ կերպով և վստահորեն ընթացավ նոր կյանքի կառուցման անծանոթ ճանապարհներով, հարթեց ամբողջ մարդկության պայծառ ապագայի ուղին, հաջողությամբ կառուցեց սոցիալիզմ և այժմ վստահորեն առաջ է ընթանում դեպի կոմունիզմ։

ՍՍՌՄ-ում սոցիալիստական շինարարությունը, սովետական մարդկանց խաղաղ ստեղծագործական աշխատանքը ընդհատվեց մեր երկրի վրա ֆաշիստական Գերմանիայի ուխտադրուժ, ավազակային հարձակման հետևանքով։ Ֆաշիստական հորդաների ներխուժումը նախապատրաստվում և հրահրվում էր միջազգային իմպերիալիզմի կողմից։

Սովետական Միությունը բազմիցս առաջարկել է ԱՄՆ-ին, Անգլիային և Ֆրանսիային միացյալ ուժերով հակահարված տալ ֆաշիստական զավթիչներին, բայց նրանք ոչ միայն մերժեցին այդ առաջարկները, այլև հակառակ իրենց ժողովուրդների շահերին, սկսեցին ակտիվորեն պաշտպանել և զինել ֆաշիզմը, միլիարդավոր դոլարներ ծախսել այդ նպատակի համար, ամեն կերպ աշխա-

տելով նրան հրել դեպի Արևելք։ Դրանով ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի իմպերիալիստները շատ հեռու գնացող նպատակներ էին հետապնդում։ Նրանք հույսով էին, որ դաժան պատերազմում իրենց գերմանական մրցակիցները կթուլանան, ՍՍՌՄ-ը կոչընչացվի կամ արյունաքամ կլինի և իրենք թե՛ հաղթողին և թե՛ պարտվողին իրենց կամքը կթելադրեն։

Սովետական ժողովուրդը միայնակ իր ուսերի վրա կրելով պատերազմի ամբողջ ծանրությունը և ջախջախելով ֆաշիստական հրոսակախմբերին, ձախողեց անգլո-ամերիկյան իմպերիալիստների հրեշավոր պլանները, պատերազմից դուրս եկավ ավելի ուժեղ և ամուր, ավելի հզորացած և միաձույլ։

Հայրենական Մեծ պատերազմում սովետական հերոս ժողովուրդը, նրա պանծալի Բանակը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ոչ միայն պաշտպանեցին Հոկտեմբերյան ռևոլյուցիայի մեծագույն նվաճումները, մեր Հայրենիքի ազատությունը, պատիվն ու անկախությունը, այլև եղբայրական օգնության ձեռք մեկնեցին Եվրոպայի ու Ասիայի ժողովուրդներին, նրանց փրկեցին ֆաշիստական ստրկացման սպառնալիքից։

Հետպատերազմյան տարիներին բուժելով պատերազմի ծանր վերքերը և վերացնելով



նրա հետևանքները, սովետական ժողովուրդը չտեսնված կարճ ժամկետում վերականգնեց ժողովրդական տնտեսությունը և առաջ շարժեց էկոնոմիկայի, տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր ճյուղերը։ Հաջողությամբ կատարելով ժողովրդական տնտեսության զարգացման 4-րդ և 5-րդ հնգամյա պլանները, Սովետական Միությունը հսկայական չափերով գերազանցեց արտադրության նախապատերազմյան մակարդակը, խոշոր առաջընթաց քայլ կատարեց սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ճանապարհին։

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձը մեր Հայրենիքը դիմավորում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի պատմական որոշումների կենսագործման համար մղվող համաժողովրդական լարված պայքարի իրադրության մեջ։

Ընդամենը տարի և կես է անցել XX համագումարից, բայց նրա որոշումների մեծ ուժը իր կոնկրետ մարմնավորումն է գտել կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում սովետական ժողովրդի ձեռք բերած նորանոր նվաճումների մեջ։

Պանծալի տարեդարձը արժանավայել է

դիմավորում մեր երկրի հերոսական բանվոր
դասակարգը, որն անձնվիրաբար պայքարում
է արդյունաբերության բոլոր ճյուղերի հետա-
գա զարգացման, արդյունաբերության ու շի-
նարարության կառավարումն էլ ավելի կա-
տարելագործելու ուղղությամբ պարտիայի
առաջադրանքները կատարելու համար։

Սովետական մարդիկ հպարտանում են
սոցիալիստական արդյունաբերության աշ-
խատողների ձեռք բերած վիթխարի հաջողու-
թյուններով։ 1957 թվականին ՍՍՌՄ արդյու-
նաբերական արտադրության ընդհանուր ծա-
վալը 1913 թվականի մակարդակը գերազան-
ցում է 33 անգամ, ընդ որում արտադրամի-
ջոցների արտադրությունը ավելացել է 74 ան-
գամ, իսկ մեքենաշինական և մետաղամշակ-
ման արտադրանքի ծավալն 1957 թվականին
կաճի 200 անգամ։ 1957 թվականի սպառման
առարկաների արտադրության ծավալը 1913
թվականի համեմատությամբ կավելանա 13
անգամ։

Արդյունաբերական արտադրանքի ընդհա-
նուր ծավալով Սովետական Միությունը այժմ
աշխարհում գրավում է երկրորդ տեղը
(ԱՄՆ-ից հետո)։ Ցարական Ռուսաստանը
արդյունաբերական արտադրանքի ընդհա-
նուր ծավալով ԱՄՆ-ից ետ էր մնում 14,5
անգամ, Անգլիայից՝ 4,5 անգամ, Գերմանիա-



յից՝ 5,9 անգամ, իսկ բնակչության մեկ շըն-
չին ընկնող արտադրանքով ետ էր մնում
ԱՄՆ-ից՝ 21,4 անգամ, Անգլիայից՝ 14, Գեր-
մանիայից 13 անգամ։ Համաշխարհային
արդյունաբերական արտադրանքի մեջ Ռու-
սաստանի բաժինը կազմում էր ընդամենը
2,6 տոկոս։ Եթե 1913 թվականին Ռուսաս-
տանն արտադրել է չուգուն՝ 4,2 միլիոն տոն-
նա, պողպատ՝ 4,3 միլիոն տոննա, գլան-
վածք՝ 3,6 միլիոն տոննա, ապա 1955 թվա-
կանին ՍՍՌՄ-ում այնքան չուգուն է ձույ-
վել, որքան Անգլիայում, Ֆրանսիայում,
Բելգիայում, Իտալիայում, Ավստրիայում և
Շվեդիայում միասին վերցրած։

1955 թվականին ածխի հանույթը 14 ան-
գամ գերազանցել է 1913 թվականի մակար-
դակը։ Այժմ մեր երկիրը ավելի շատ քարա-
ծուխ է արտադրում քան Անգլիան և Ֆրան-
սիան միասին վերցրած։

Հինգերորդ հնգամյակում պողպատի ձուլ-
ման միայն աճը մեզ մոտ կազմել է 18 մի-
լիոն տոննա, որը հավասար է ամբողջ 1955
թվականի ընթացքում Ֆրանսիայի և Իտալիա-
յի արտադրած պողպատին, իսկ Անգլիայում
պողպատի ձուլումը 18 միլիոն տոննայով
ավելացնելու համար պահանջվեց 63 տարի
(1892—1955)։ Հինգերորդ հնգամյակում ած-
խի հանույթի միայն աճը 3 անգամ ավել է

ամբողջ 1913 թվականի հանույթից։ Նավթի
արտադրությամբ ՍՍՌՄ-ը 1938 թվականից
սկսած առաջին տեղումն է Եվրոպայում։
Վեցերորդ հնգամյակի միայն մեկ տարվա
նավթի հանույթի աճը ավել կլինի ամբողջ
նախառևոլյուցիոն Ռուսաստանի նավթի հա-
նույթից։

Սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման
գործում մեծ է էլեկտրիֆիկացիայի դերը։
Դեռևս սովետական իշխանության առաջին
տարիներին Վ. Ի. Լենինը գրել է. «Կոմունիզ-
մը՝ դա սովետական իշխանությունն է
պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան»։
1955 թվկանին էլեկտրաէներգիայի արտա-
դրությունը 1920 թվականի համեմատու-
թյամբ ավելացել է 340 անգամ։ Այժմ մեզ
մոտ յուրաքանչյուր մեկ օրում այնքան էլեկ-
տրաէներգիա է ստացվում, որքան ստացվել
է ամբողջ 1920 թվականի ընթացքում։

1955 թվականին մեր երկիրն ավելի շատ
էլեկտրաէներգիա է արտադրել, քան Ան-
գլիայի, Ֆրանսիայի, Շվեդիայի, Դանիայի
էլեկտրակայանները միասին վերցրած։
ՍՍՌՄ-ն աշխարհում առաջինը կառուցեց
ատոմային էներգիայով աշխատող էլեկտրա-
կայանը։

Մանր ինդուստրիայի առաջնահերթ զար-
գացման լենինյան գլխավոր գիծը իր վառ



արտահայտությունն է գտել նաև 6-րդ հըն-
գամյա պլանի մեջ։ 1960 թվականին մեր եր-
կիրը, 1913 թվականի համեմատությամբ, 40
անգամ ավելի արտադրանք է տալու. այդ նը-
շանակում է, որ յուրաքանչյուր 9 օրում այն-
քան արդյունաբերական արտադրանք է թո-
ղարկվելու, որքան արտադրել է ցարական
Ռուսաստանը ամբողջ 1913 թվականի ըն-
թացքում։

Պարտիայի XX համագումարը նշեց, որ
այժմ Սովետական Միությունն ունի բոլոր
անհրաժեշտ պայմանները, խաղաղ տնտեսա-
կան մրցության մեջ պատմական կարճ ժա-
մանակամիջոցում այդ խնդրի լուծման հա-
մար։ Բավական է նշել, որ 1913—1955 թ. թ.
մեկ շնչին ընկնող ամբողջ արդյունաբերա-
կան արտադրանքը աճել է ՍՍՌՄ-ում՝ 19,4
անգամ, ԱՄՆ-ում՝ 2,3 անգամ, Անգլիայում՝
1,6 անգամ, Ֆրանսիայում՝ 1,8 անգամ և
այլն։

ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի
լուծման գործում կարևոր էտապ է հանդի-
սանում 6-րդ հնգամյա պլանը։ Արդյունաբե-
րության արտադրանքի տարեկան միջին աճը
կկազմի 10 տոկոս, մինչդեռ այն վերջին 20
տարիների ընթացքում ավելացել է ԱՄՆ-ում՝
2,8 տոկոսով, Անգլիայում՝ 3,5 տոկոսով,
Ֆրանսիայում՝ 2,5 տոկոսով։

Այսպիսով, բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի տեսակետից Սովետական Միության և ԱՄՆ-ի ու մյուս առավել զարգացած կապիտալիստական երկրների միջև ընկած տարածությունը գնալով կրճատվում է։ Ամերիկյան ժուռնալներից մեկը տագնապով հաշվել է, որ ՍՍՌՄ-ը անտեսական տեսակետից ԱՄՆ-ին կհասնի 15 տարի հետո և նրան իր ետևում կթողնի 20 տարուց հետո։

Իրագործելով Կոմունիստական պարտիայի XX համագումարի որոշումները, սովետական ժողովուրդը 1957 թվականի անցած 9 ամիսների ընթացքում մեծ հաջողությունների է հասել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման գործում, նոր, առաջընթաց քայլ կատարելով կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ամրապնդման ճանապարհին։ Արդյունաբերական արտադրանքի արտադրության 9 ամսյա առաջադրանքները գերակատարել են բոլոր միութենական ռեսպուբլիկաները։

Դեպի կոմունիզմ մեր առաջընթացի գործում բացառիկ կարևոր նշանակություն ունի համաժողովրդական հավանություն ստացած արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը։

Այդ վերակառուցումը բարձրացրել է միու-



թենական ռեսպուբլիկաների ու տեղական կազմակերպությունների նախաձեռնությունը, նրանց դերն ու պատասխանատվությունը ժողտնտեսության ղեկավարման գործում։ Այն հնարավորություն է տալիս հայտնաբերելու և գործողության մեջ դնելու սոցիալիստական տնտեսության վիթխարի ռեզերվներն ու բնական հարստությունները, դրանք լրիվ կերպով օգտագործելու հօգուտ ժողովրդի, կոմունիզմի կառուցման տեմպերի արագացման։

Պանծալի քառասնամյակը քաղաքական ու աշխատանքային հուժկու վերելքի իրադրության պայմաններում է դիմավորում մեր լայնածավալ Հայրենիքի կոլտնտեսային գյուղի աշխատավորությունը։

Վերջին տարիներին պարտիան մի շարք միջոցառումներ իրագործեց գյուղատնտեսության շեշտակի վերելքի ուղղությամբ։ Այդ միջոցառումներից առանձնապես կարևոր նշանակություն ունեցան խամ ու խոպան հողերի յուրացումը, կոլտնտեսությունների ու ՄՏ կայանների ամրապնդումը ղեկավար և մասնագիտական կադրերով, գյուղատնտեսության պլանավորման նոր կարգը, գյուղատնտեսական մթերքների մթերումների ու գնումների գների բարձրացումը, կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորումը և այլն։

Պարտիայի և կառավարության միջոցառումները բարձրացրել են կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը և առաջին խոշոր հաջողություններն ապահովել գյուղատնտեսության հետագա հզոր վերելքի խնդրի լուծման գործում։

Սովետական ժողովուրդը մեծագույն սխրագործություն կատարեց, երեք տարում յուրացնելով 35,9 միլիոն հեկտար խամ ու խոպան հող։ Դրա շնորհիվ 1956 թվականին մեր երկիրը լրացուցիչ կարգով ստացավ ավելի քան մեկ միլիարդ փութ ապրանքային հացահատիկ։ 1956 թվականին ստացվել է շաքարի ճակնդեղ՝ 5 միլիոն տոննայով, բամբակ՝ 481 հազար տոննայով, կարտոֆիլ՝ 1,5 անգամ ավելի, քան 1955 թվականին։

Մեր երկրի կոլտնտեսություններն ու սովխոզները զգալի նվաճումներ ունեն անասնապահության զարգացման, մսի և առանձնապես կաթի արտադրության ավելացման ասպարեզում։ 1956 թվականին կաթի համախառն արտադրանքը կոլտնտեսություններում 1953 թվականի համեմատությամբ, ավելացել է մոտ 2 անգամ։

Գյուղատնտեսության աշխատողները մեծ խանդավառությամբ դիմավորեցին պարտիա-



յի առաջադրանքը՝ մոտակա տարիներին բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու վերաբերյալ։ Հենց միայն վերջին մեկ տարվա թվերը համոզիչ կերպով ցույց են տալիս, թե որքան ռեալ է այդ խնդիրը։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացել է 3 միլիոնով, խոզերինը՝ 5 միլիոն 300 հազարով, ոչխարներինը և այծերինը՝ 4 միլիոն 900 հազարով, մսի արտադրությունը ավելացել է 30 տոկոսով, կաթինը՝ 26 տոկոսով։ Եթե համեմատության համար վերցնենք 1953 թիվը, երբ պարտիան ձեռնամուխ եղավ գյուղատնտեսության բոլոր ճյուղերի վերելքին, ապա այդ ժամանակամիջոցում մեկ կովի միջին կաթնատվությունը ավելացել է 2 անգամ, իսկ ամբողջովին վերցրած կոլտնտեսություններում ու սովխոզներում ավելացել է երկու և կես անգամ։

1957 թվականի 8 ամիսներին կոլտնտեսություններում և սովխոզներում կաթի համախառն արտադրանքը անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 21 տոկոսով, իսկ կաթի մթերումների և գնումների տարեկան պլանը սեպտեմբերի 20-ի դրությամբ կատարվել է 96 տոկոսով։ Գյուղի աշխատավորների այս նվաճումները ցույց են տալիս, որ

անասնաբուծության մթերքների արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու պարտիայի առաջադրանքը հաջողությամբ կատարվում է։

Ծանր ինդուստրիայի և նրա սիրտը հանդիսացող մեքենաշինության զարգացումը հնարավորություն տվեց գյուղատնտեսությունը հագեցնելու ժամանակակից տեխնիկայով։ Եթե Վ. Ի. Լենինը սովետական իշխանության առաջին տարիներին երազում էր 100 հազար տրակտորի մասին, ապա մեր երկրի դաշտերում ներկայումս աշխատում են 1 միլիոն 577 հազար տրակտոր (15-ուժանոցի վերածած), 385 հազար հացահատիկային կոմբայն, 631 հազար բեռնատար ավտոմոբիլ և միլիոնավոր գյուղատնտեսական բարդ մեքենաներ։ 1956—60 թ. թ. գյուղատնտեսությունը կստանա 1 միլիոն 650 հազար տրակտոր, որը 275 հազարով ավելի է, քան ստացվել է նախորդ 4 հնգամյակներին, 560 հազար հացահատիկային կոմբայն, կամ 55 հազարով ավելի, քան եղել է վերջին 25 տարիներին, 250 հազար եգիպտացորեն և սիլոս հավաքող մեքենաներ և այլն։

Այս օրերին մեր անծայրածիր Հայրենիքի բոլոր անկյուններում, գործարաններում ու ֆաբրիկաններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, ամենուրեք աղբյուրի նման



հորդում է աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը, ծավալվում է քաղաքական ու աշխատանքային հուժկու վերելքը, նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը՝ երկրին ավելի շատ պողպատ ու մեքենաներ, նավթ և ածուխ, հաց և միս, ժողովրդական սպառման շատ ապրանքներ տալու համար։

Ամեն օր ուրախալի լուրեր են ստացվում սովետական ժողովրդի աշխատանքային հաղթանակների մասին, պետական պարտավորությունները և տարեկան պլանները ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու մասին։

***

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության միջոցառումները արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա զարգացման ուղղությամբ ապահովում են բնակչության ռեալ եկամուտների աճը, նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացումը։ Աշխատավորների կենսամակարդակի բարձրացման կարևոր ցուցանիշը ազգային եկամուտն է։ Միմիայն 5-րդ հնգամյակի տարիներին այն աճել է 68 տոկոսով. վեցերորդ հնգամյակում նախատեսված է ազգային եկամտի աճ 60 տոկոսով։ 1960 թվականին ազգային եկամու-

տը 24 անգամ ավել կլինի 1913 թվականի համեմատությամբ։

1950—55 թվականներին ռեալ աշխատավարձն աճել է 39 տոկոսով, իսկ 6-րդ հնգամյակի տարիներին ավելանալու է մոտ 30 տոկոսով։ 1956 թվականին կոլտնտեսականների դրամական և մթերային եկամուտները, 1955 թվականի համեմատությամբ, ավելացել են 12 տոկոսով։ 1960 թվականի համար նախատեսված է մոտ 40 տոկոս աճ։ 1956 թվականին կոլտնտեսությունները և կոլտնտեսականները պետությանը հանձնած և վաճառած գյուղատնտեսական մթերքների դիմաց 20 միլիարդ ռուբլի ավել են ստացել, քան 1955 թվականին։ Սովետական պետությունը անընդհատ ավելացնում է ժողովրդական սպառման ապրանքների արտադրանքը։ Վեցերորդ հնգամյակի վերջում ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, 1940 թվականի համեմատությամբ, ավելանալու է մոտ 3,5 անգամ։

1957 թվականի առաջին կիսամյակում բնակչությունը պետության հաշվին զանազան վճարումների և արտոնությունների ձևով ստացել է 97,5 միլիարդ ռուբլի, կամ 20 տոկոսով ավելի, քան անցյալ տարվա առաջին կիսամյակում։ Այդ ժամանակաշրջանում ա-



վելի քան 6 միլիարդ ռուբլով ավելացել է կոլտնտեսականների դրամական վճարումները, 40 միլիարդ ռուբլով ավելացել է պետական և կոոպերատիվ առևտրի ապրանքաշրջանառությունը։

Աշխատավորների համար բարեկեցիկ կյանքի ստեղծման, նրանց կենցաղի լավագույն կազմակերպման գործում վճռական տեղ է պատկանում բնակարանային շինարարությանը։

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի վերջերս ընդունած «ՍՍՌՄ-ում բնակարանային շինարարության զարգացման մասին» որոշումը սովետական մարդկանց նկատմամբ պարտիայի մշտական հոգատարության վառ արտահայտությունն է։ Պարտիան ու կառավարությունը գտնում են, որ ներկայումս անհրաժեշտ պայմաններ են ստեղծված բնակարանային շինարարության հետագա վերելքի համար և խնդիր են դնում շատ կարճ ժամկետում հասնել բնակարանային ֆոնդի զգալի աճի, որպեսզի մոտակա 10—12 տարում երկրում վերջ տրվի բնակարանային պակասին։

* * *

Մեր երկիրը մեծ հաջողություններ է ձեռք բերել կուլտուրական շինարարության բնագավառում։ Կոմունիստական պարտիայի ամ-

բողջ քաղաքականությունը կուլտուրական շինարարության բնագավառում ուղղված է բոլոր բանվորներին և գյուղացիներին կրթված ու կուլտուրական դարձնելու նպատակին։ Մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիան մեր երկրի բնակչության երեք քառորդը անգրագետ էր։ Սովետական իշխանությունը աշխատավոր մասսաների համար լայն ճանապարհ բացեց դեպի լուսավորությունն ու գիտությունը։

1955—1956 ուս. տարում ՍՍՌՄ դպրոցներում, տեխնիկումներում, բուհերում և զանազան դասընթացներում սովորողների թիվը 50 միլիոն մարդուց ավելի էր, այլ կերպ ասած, ներկայումս սովետական յուրաքանչյուր 4 մարդուց մեկը սովորում է։ Բնակչության 1000 հոգուն 1940 թվականին ընկնում էր ՍՍՌՄ-ում՝ 182, Անգլիայում՝ 145, Ֆրանսիայում՝ 135 սովորող։

Մեր երկրում մտցված է ընդհանուր պարտադիր յոթնամյա ուսուցում գյուղական վայրերում և տասնամյա ուսուցում խոշոր քաղաքներում։ Վեցերորդ հնգամյակում հիմնականում ավարտվելու է անցումը միջնակարգ ուսուցման քաղաքներում ու գյուղական վայրերում։

ՍՍՌՄ-ում մեծ նվաճումներ են ձեռք բեր-



վել բարձրագույն կրթության ասպարեզում։ 1914 թվականի համեմատությամբ ուսանողների թիվը 1956 թվականին ավելացել է մոտ 15 անգամ։ Մինչռևոլյուցիան Ռուսաստանի 105 բուհերում սովորում էր 127 հազար ուսանող, իսկ 1956 թվականին ՍՍՌՄ-ի 765 բուհերում սովորում էր մեկ միլիոն 867 հազար մարդ։ Բնակչության յուրաքանչյուր 10 հազար մարդուն ընկնում է՝ Տաջիկստանում 53 ուսանող, Ուզբեկստանում՝ 71, Ադրբեջանում՝ 93, Իրանում՝ 3, Թյուրքիայում՝ 12 Իտալիայում՝ 22, Ֆրանսիայում՝ 36 ուսանող։ Այժմ մեր երկրի բուհերում և տեխնիկումներում սովորողների թիվը հասնում է 4 միլիոնի՝ 1913 թվականի 182 հազարի դիմաց։ Մեր երկրի բուհերը և տեխնիկումները միայն 5-րդ հնգամյակում տվել են 2 միլիոն 681 հազար շրջանավարտ, իսկ 1957 թվականին կտան ավելի քան 770 հազար մասնագետ։

Մեծ են մեր ժողովրդի նվաճումները գիտության ու տեխնիկայի զարգացման բնագավառում։ Սովետական գիտնականները խոշոր հայտնագործություններ են արել առանձնապես հիդրոտեխնիկայի, էլեկտրոտեխնիկայի, ֆիզիկայի, միչուրինյան բիոլոգիայի, պավլովյան ֆիզիոլոգիայի, մաթեմատիկայի, աստղային ու մոլորակային կոսմոգոնիայի

տապարեզում և այլն։ Մեր երկրում ստեղծված են հաշվիչ մեքենաներ՝ արագ գործող էլեկտրոնային հաշվիչ մեքենան, որը մեկ վայրկյանում կատարում է 7—8 հազար մաթեմատիկական օպերացիա, փոխարինելով տասնյակ հազարավոր հաշվող մարդկանց։ Սովետական գիտության ու տեխնիկայի մեծագույն նվաճումներից է ռեակտիվ մարդատար «Տու—104» ինքնաթիռը։

Սովետական գիտնականները հայրենանվեր աշխատանքով աշխարհում առաջինը ստեղծեցին գերհեռու, միջմայրցամաքային բալիստիկ հրթիռը։

Գյուղատնտեսական գիտության գործիչները մշակել են ագրոտեխնիկայի նոր եղանակներ, ստեղծվել են գյուղատնտեսական կուլտուրաների նոր, բարձրարժեք տեսակներ։

Գիտական հիմնարկությունների թիվը 1914 թվականի 289-ից, 1956 թվականին հասել է 2747-ի, միայն ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիան միավորում է 120-ից ավելի գիտահետազոտական հիմնարկներ։ Նախառևոլյուցիոն Ռուսաստանում հաշվվում էր 10 հազար գիտաշխատող, իսկ այժմ նրանց թիվը հասնում է 240 հազարի։

Սովետական ժողովրդի կուլտուրական զարգացմանն են ծառայում կուլտուր-լուսա-



վորական հիմնարկները։ Ակումբների թիվը նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 532 անգամ։ 1914 թվականին եղած 237-ի փոխարեն, 1956 թվականին մեր երկրում գործում էր 126 հազար ակումբային հիմնարկներ, ընդ որում գյուղական վայրերում 1914 թվականին կար 94, 1956 թվականին՝ 115 հազար ակումբ։

Այժմ մեր երկրում կա 400 հազարից ավելի գրադարան (1914 թվականին եղած 12,6 հազարի փոխարեն), որից գյուղական վայրերում՝ 119 հազար։ Մինչռևոլյուցիոն Ռուսաստանում կար 180 թանգարան, այժմ թանգարանների թիվը ՍՍՌՄ-ում հասնում է 862-ի։

Ցարական Ռուսաստանում կար 1400 կինոսարքավորում, այժմ մենք ունենք 63 հազար կինոսարքավորում, որից 47 հազարը գյուղական վայրերում։ Վեցերորդ հնգամյակում 4 անգամ ավելի կինոթատրոններ են կառուցվելու, քան կառուցվել են 5-րդ հնգամյակում։

Սովետական իշխանության տարիներին թատրոնների թիվը 172-ից հասավ 508-ի։ Այժմ մենք ունենք 127 ֆիլհարմոնիա, 180 երաժշտական կոլեկտիվ։ ՍՍՌՄ-ում հաշվվում է 19,5 միլիոն ռադիոտրանսլյացիոն կետեր, լայնորեն արմատավորվում է հեռուստատեսությունը։

ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների լեզուներով լույս են տեսնում թերթեր, ամսագրեր, գրքեր։ Մասսայական տիրաժով ՍՍՌՄ-ում հրատարակվում է 7250 թերթ։ Միայն «Պրավդա» թերթի տիրաժը ավելին է, քան նախառևոլյուցիոն բոլոր թերթերինը միասին վերցրած։ 1956 թվականի սկզբներին մեզ մոտ 54 լեզուներով լույս էր տեսնում 2026 ամսագիր։ ՍՍՌՄ-ում գործում է 300 գրքային հրատարակություն։ Սովետական իշխանության տարիներին 122 լեզուներով լույս է տեսել 1 միլիոն 268 հազար անուն գիրք, ավելի քան 18,2 միլիարդ ընդհանուր տիրաժով։ Մեծ տիրաժով լույս են տեսել մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները։

Կոմունիստական պարտիան անդուլ հոգատարություն է ցուցաբերում բնակչության առողջության պահպանման, բուժսպասարկման բարելավման ուղղությամբ։ Աշխատավորներին ցույց տրվող բժշկական ձրի օգնությունը, ամեն տարի արձակուրդ ստանալու, սանատորիաներից և հանգստյան տներից օգտվելու իրավունքը ամրապնդված է օրենսդրությամբ։

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պանծալի 40-ամյակը էկոնո-



միկայի և կուլտուրայի զարգացման ասպարեզում ձեռք բերած փիթխարի հաջողություններով է դիմավորում նաև վերածնված հայ ժողովուրդը։

Սովետական Հայաստանը Մեծ Հոկտեմբերի ծնունդն է, լենինյան ազգային քաղաքականության կենդանի մարմնավորումը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի լույսը ցնծությամբ դիմավորեց բազմաչարչար հայ ժողովուրդը և հերոսական պայքարի ելավ Հայաստանում սովետական կարգեր հաստատելու համար։ Բայց հայ ժողովրդի թշնամիներ դաշնակները, մենշևիկների, մուսավաթիստների և Արևմուտքի իմպերիալիստների աջակցությամբ ու միջամտությամբ հետաձգեցին սովետական իշխանության հաղթանակը, երկիրը վաճառեցին սկզբում գերմանա-թուրքական ջարդարարներին, այնուհետև անգլո-ամերիկյան զավթիչներին, հրով ու սրով արյան մեջ խեղդելով աշխատավորության ռևոլյուցիոն ելույթները։ Հայ ժողովրդի վրա կախվել էր ֆիզիկական բնաջնջման սպառնալիքը։ Եվ, ահա այդ ծանր, կրիտիկական մոմենտին հայ ժողովուրդը վճռական գոտեմարտի բռնվեց թշնամու հետ և 1920 թվականի նոյեմբերի 29-ին, Կարմիր Բանակի օգնու-

թյամբ ընդմիշտ վերջ տվեց դաշնակների արյունալի տիրապետությանը և հռչակեց սովետական իշխանություն։

Ռևոլյուցիայի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը դեկտեմբերի 2-ին, ջերմորեն ողջունեց կապիտալիզմի լծից ազատագրված աշխատավոր հայ ժողովրդին։

Սովետական իշխանության տարիներին ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում Հայաստանը կերպարանափոխվել և անճանաչելի է դարձել։

Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության հետևողական ու անշեղ կենսագործման, ռուս մեծ ժողովրդի և եղբայրական մյուս ժողովուրդների օգնության շնորհիվ Հայաստանը՝ ցարական Ռուսաստանի երբեմնի հետամնաց ծայրամասից, դաշնակների կողմից քանդի, հրի ու սրի մատնված երկրից դարձավ առաջավոր ինդուստրիալ-կոլտնտեսային ռեսպուբլիկա, բարձր զարգացած կուլտուրայի երկիր։

Արդյունաբերական արտադրանքի ծավալը 5-րդ հնգամյակում, 1950 թվականի համեմատությամբ, կրկնապատկվել է, ընդ որում մեքենաշինության արտադրանքն ավելացել է 3,4 անգամ, մետալուրգիական ձեռ-



նարկությունների՝ 3,3 անգամ, քիմիական արդյունաբերությանը՝ 2,7 անգամ։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ աճել է 45 անգամ։ Վեցերորդ հնգամյա պլանով նախատեսված է արդյունաբերական արտադրանքն ավելացնել 1,7 անգամ, ընդ որում գունավոր մետալուրգիայի և էլեկտրա-տեխնիկական արդյունաբերության արտադրանքը՝ ավելի քան 3 անգամ, քիմիական արդյունաբերությանը՝ 2,2 անգամ, մեքենաշինությանը և գործիքաշինությանը՝ 2,7 անգամ։

Մեքենաշինական ու մետաղամշակման մի շարք խոշոր ձեռնարկություններ են կառուցվելու Երևանում, Լենինականում, Կիրովականում, Ախտայում, ավարտվելու է Սևան— Հրազդան կասկադի շինարարությունը, ըսկըսվելու է մի շարք հիդրոէլեկտրակայանների կառուցումը Որոտան գետի վրա։ Արդեն սկսել են աշխատել մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտը Երևանում, քիմիական արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի արտադրական պրոցեսների ավտոմատացման գիտահետազոտական ինստիտուտը Կիրովականում, ինքնուրույն կոնստրուկտորական

բյուրոներ են ստեղծվել Լենինականում, Կիրովականում։ Այս տարի Երևանում թողարկվելու է էլեկտրոնային հաշվիչ մաթեմատիկական առաջին մեքենան։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները հաջողությամբ կատարում են 1957 թվականի առաջադրանքները։ Արդյունաբերության համախառն արտադրանքի արտադրության 1957 թվականի առաջին կիսամյակի պլանը ռեսպուբլիկայում կատարվել է 103 տոկոսով։ Ամբողջ ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1957 թվականի առաջին կիսամյակում 1956 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ աճել է 11 տոկոսով։

Ռեսպուբլիկայի աշխատավորները առանձնապես մեծ հաջողությունների են հասել էլեկտրիֆիկացման վերաբերյալ լենինյան պատգամների կենսագործման ասպարեզում։ 1913 թվականի համեմատությամբ, 1956 թվականին, էլեկտրաէներգիայի արտադրությունը ավելացել է 450 անգամ։ Այդ նշանակում է, որ այժմ ռեսպուբլիկայի էլեկտրակայանները մեկ օրում ավելի շատ էլեկտրաէներգիա են արտադրում, քան արտադրվել է ամբողջ 1913 թվականի ընթաց-



քում։ Բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ Հայաստանը առաջ է անցել այնպիսի զարգացած երկրներից, ինչպիսիք են Ֆրանսիան և Հոլանդիան, մեզ մոտ բնակչության մեկ շնչին 2 անգամ ավելի էլեկտրաէներգիա է ընկնում, քան Իտալիայում և Ճապոնիայում։ Այժմ Հայաստանը 2 անգամ ավելի էլեկտրաէներգիա է արտադրում, քան Թուրքիան, չնայած վերջինս իր տերիտորիայով 25 անգամ մեծ է Հայաստանից։

Ժողովրդի բարեկեցության նկատմամբ հոգատարության վառ արտահայտություններից մեկն էլ բնակարանային շինարարությունն է։ Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայում աճել են նոր քաղաքներ և բանվորական ավաններ, Երևանը դարձել է ժամանակակից հզոր արդյունաբերական և կուլտուրական կենտրոն, կերպարանափոխվել ու բարեկարգվել են Լենինականը, Կիրովականը, Ալավերդին, Ղափանը, բոլոր շրջանային կենտրոնները, գյուղերը։

Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները կենսագործելով ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի և պարտիայի ու կառավարության հետագա միջոցառումները, զգալի հաջողությունների են հասել գյու-

ղատնտեսության մթերքների արտադրության ավելացման գործում։ Տարեցտարի ավելանում է անասնաբուծության հիմնական մթերքների արտադրությունը, անասունների գլխաքանակը, բարձրանում է նրանց մթերատվությունը, աճում են կոլտնտեսությունների և կոլտնտեսականների եկամուտները։ 1955 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, կոլտնտեսականների դրամական եկամուտներն աճել են 3 անգամ, անբաժանելի ֆոնդերը՝ 4 անգամ, արտադրության հիմնական միջոցները՝ 3,8 անգամ։

Հինգերորդ հնգամյակում բամբակի համախառն բերքն ավելացել է 47 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 50 տոկոսով, ծխախոտինը՝ 54 տոկոսով, բանջարեղենինը՝ 78 տոկոսով, խաղողինը՝ 29 տոկոսով։ Գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքատարածությունները 1919 թվականի համեմատությամբ ավելացել են 6 անգամ։ Զգալի հաջողություններ են ձեռք բերվել անասնաբուծության զարգացման ասպարեզում։ Անասունների ընդհանուր գլխաքանակը ավելացել է 21 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 36 տոկոսով, խոզերինը՝ 62 տոկոսով, ոչխարներինը՝ 47 տոկոսով։



Ջերմորեն արձագանքելով մոտակա տարիներին մսի, կաթի, յուղի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու պարտիայի կոչին և հաշվի առնելով իրենց հնարավորությունները, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները պարտավորվել են 1957 թվականին հարյուր հեկտար հողատարածության դիմաց ստանալ 55 ցենտներ միս և 222 ցենտներ կաթ, իսկ 1960 թվականին 82 ցենտներ միս, 352 ցենտներ կաթ։ Մի շարք շրջաններ և բազմաթիվ կոլտնտեսություններ վերցրել են ավելի բարձր պարտավորություններ։

Մտնելով Մեծ Հոկտեմբերի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, ռեսպուբլիկայի աշխատավորները զգալի հաջողություններ են ձեռք բերել 1957 թվականի պետական պլանի կատարման գործում։ Արդյունաբերության համախառն արտադրանքի 8 ամսվա պլանը կատարվել է 103,8 տոկոսով, ընդ որում ժողտնտխորհի ձեռնարկությունների գծով կատարվել է 103,2 տոկոսով, տեղական Սովետների արդյունաբերությունը 102,1 տոկոսով, ռեսպուբլիկական մինիստրությունների և գերատեսչությունների՝ 116,3 տոկոսով։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները ժամկետից շուտ կատարեցին

*հացամթերումների, բրդի, պտուղների հանձնման տարեկան պլանները։ Կաթի մթերումների և գնումների տարեկան պլանը, սեպտեմբերի 20-ի դրությամբ, կատարված է 90,6 տոկոսով, իսկ Աղինի, Ապարանի, Արթիկի, Վեդու, Մեղրիի, Շամշադինի կոլտնտեսությունները գերակատարել են տարեկան առաջադրանքները։*

*Ծաղկում է Սովետական Հայաստանի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Սովետական իշխանության տարիներին Հայաստանում, ինչպես նաև եղբայրական մյուս ռեսպուբլիկաներում տեղի է ունեցել իսկական կուլտուրական ռևոլյուցիա։*

*1914 թվականին Հայաստանում գործում էր ընդամենը 459 դպրոց, որտեղ սովորում էր 34.700 աշակերտ և աշխատում էր 1.100 ուսուցիչ։ Այժմ ՀՍՍՌ-ում գործող դպրոցների թիվը գերազանցում է 1914 թվականին եղած ուսուցիչների թվին։ Ռեսպուբլիկայում մոտ 1.200 հանրակրթական դպրոցներում սովորում են ավելի քան 290 հազար աշակերտ, աշխատում են մոտավորապես 19 հազար ուսուցիչ։*

*Հայաստանում բնակչության յուրաքանչյուր 1.000 հոգուն 45 անգամ ավելի սովո-*



*րող է ընկնում, քան Իրանում, 11 անգամ ավելի, քան Թուրքիայում, 4 անգամ ավելի, քան Ֆրանսիայում և Իտալիայում։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ 1955 թվականին հաշվվում էր 43,9 հազար բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող մասնագետ։ Ինժեներների թիվը 1941—1955 թ. թ. ավելացել է ավելի քան 3,3 անգամ, տեխնիկներինը՝ 2,4 անգամ, գյուղատնտեսության մասնագետներինը՝ 2,8 անգամ։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ այժմ աշխատում են ավելի քան 5 հազար գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ, անասնաբույժներ, մեխանիկներ և այլ մասնագետներ։*

*Ռեսպուբլիկայի Գիտությունների ակադեմիան իր 56 գիտահետազոտական հիմնարկներով հսկայական ավանդ է մուծում ժողովրդա-տնտեսական կարևոր նշանակություն ունեցող բազմաթիվ պրոբլեմների լուծման, սովետական գիտության հետագա զարգացման գործում։*

*Մեծ են հայ ժողովրդի նվաճումները գրականության և արվեստի զարգացման գործում։ Սովետահայ գրողները և արվեստագետները բազմաթիվ արժեքավոր ստեղծագործություններ են տվել, որոնց մեջ արտա-*

ցուցվել են մեր կյանքում կատարված մեծագույն վերափոխումները, սոցիալիզմի երկրի մարդկանց ստեղծագործական աշխատանքը և հերոսական առօրյան։ Մեծ զարգացում է ստացել հայ ժողովրդի թատերական, երաժշտական արվեստը, կերպարվեստը, ճարտարապետությունը։

Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկան ծածկվել է կուլտուր-լուսավորական հիմնարկների խիտ ցանցով։

***

Հոկտեմբերյան ռևոլյուցիան նոր դարաշրջան բացեց պետությունների և ժողովուրդների հարաբերություններում։ Սովետական պետության արտաքին քաղաքականության գլխավոր նպատակը դարձավ խաղաղության պահպանումը, բոլոր պետությունների միջև իրավահավասար, փոխադարձ հարգման վրա հիմնված հարաբերությունների զարգացումը, բոլոր ժողովուրդների միջև բարեկամության ու համագործակցության հաստատումը։

Պարտիան ղեկավարվելով հասարակական-քաղաքական տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան ուսմունքով, վիթխարի աշխատանք ծավալեց պետությունների հետ նորմալ հարաբերություններ հաստատելու, առևտուրը



ծավալելու, կուլտուրական կապերը ընդլայնելու ուղղությամբ։

Սովետական Միությունը, բոլոր սոցիալիստական երկրները հետևողականորեն հանդես են գալիս միջազգային բոլոր վիճելի հարցերը խաղաղ լուծելու օգտին։ ՍՍՌՄ-ը այդ բանն ապացուցել է գերմանական հարցի խաղաղ կարգավորման համար իր մղած պայքարով, Ավստրիայի հետ պայմանագրի ստորագրումով, ուրիշ երկրներում իր ռազմական բազաների վերացումով։ Եվրոպայում կոլեկտիվ անվտանգության սիստեմ ստեղծելու, զինված ուժերի և սպառազինությունների կրճատման, ատոմային ու ջրածնային զենքն արգելելու ուղղությամբ Սովետական Միության առաջարկները լայն հեռանկարներ են բացում միջազգային լարվածության թուլացման, պետությունների միջև հարաբերությունների բարելավման, վիճելի և չլուծված հարցերի խելացի կարգավորման համար։

Սովետական Միության արտաքին քաղաքականությունը ջերմորեն պաշտպանում են ոչ միայն մեր երկրի, այլև ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը, քանի որ այն համապատասխանում, համընկնում է բոլոր երկրների ժողովրդական լայն մասսաների

դիրքորոշմանը, ամբողջ աշխարհում խաղաղության ու դեմոկրատիայի պահպանման ու ամրապնդման շահերին։ Սակայն Սովետական Միության և մյուս խաղաղասեր պետությունների ջանքերը ցանկալի արդյունքներ դեռևս չեն տվել, քանի որ արևմտյան տերությունները ագրեսիվ ուժերի մոլուցքով բռնված ցանկանում են աշխարհի ժողովուրդներին նորից ներքաշել բնաջնջող պատերազմի արհավիրքների մեջ և միլիոնավոր ազնիվ մարդկանց արյունով ներկված դոլարներ վաստակել, հաստատել իրենց համաշխարհային տիրապետությունը։

Իմպերիալիստական ռեակցիայի ուժերին, կապիտալին դեմ-հանդիման անառիկ ամրոցի նման կանգնած է սոցիալիզմի ու դեմոկրատիայի ճամբարը, մեծ թվով պետություններ ու ժողովուրդներ, որոնք ի վիճակի են սանձահարելու և ուշքի բերելու կատաղի կտրած իմպերիալիստներին ու նրանց կամակատարներին։

ՍՍՌՄ-ի, սոցիալիզմի ճամբարի երկրների եղբայրական համագործակցությունը, նրանց անընդհատ աճող տնտեսական, քաղաքական ու ռազմական հզորությունը, խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը ամբողջ աշխարհում խաղաղության պահ-



պանման ու ժողովուրդների անվտանգության ապահովման գրանիտե հիմքն են և հուսալի երաշխիքը։

***

Մեծ Հոկտեմբերի ծնունդ հանդիսացող սոցիալիստական պետությունը և նրա հաջողությունները տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառում, մեծագույն ազդեցություն են գործում աշխարհի բոլոր երկրների վրա։

Օգտագործելով սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ՍՍՌՄ-ի բազմահարուստ փորձը, ստանալով նրա անշահախնդիր օգնությունը, ժողովրդական դեմոկրատիայի երկրները իրենց կոնկրետ պայմաններին, ազգային առանձնահատկություններին համապատասխան, հաջողությամբ իրականացնում են ինդուստրացման կուրսը, գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխումը, կուլտուրական ռևոլյուցիան, ամրապնդում են բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, ժողովուրդների բարեկամությունը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի պատմական փորձի մեծագույն նշանակությունը կայանում է նրանում, որ նա հարթեց սոցիալիզմի մայր ուղին, այն սյունազարդ ուղին, որով

դեպի սոցիալիզմ են գնում և կընթանան բոլոր երկրների աշխատավորները։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, ՍՍՌՄ-ում սոցիալիզմի և կոմունիզմի հաղթական կառուցման ամբողջ փորձը ցույց են տալիս, որ կապիտալիզմի տապալման և կոմունիստական հասարակարգի ստեղծման վճռական պայմանը Կոմունիստական պարտիայի ղեկավարությունն է, նրա միաձույլ միասնությունը և անխզելի կապը մասսաների հետ։

Մեր փառապանծ Կոմունիստական պարտիան սոցիալիստական հասարակության զարգացման ամբողջ փորձով ապացուցել է իր անսահման նվիրվածությունը մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքին, հավատարմությունը իր ժողովրդին, միջազգային ռևոլյուցիոն շարժմանը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին։ Ահա թե ինչու մեր երկրի բանվորները, գյուղացիները, ինտելիգենցիան, աշխարհի բոլոր ազնիվ մարդիկ այնքան սիրում և հարգում են Կոմունիստական պարտիային, նրա մեջ տեսնելով մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը։ Կոմունիստական պարտիան ժողովրդի շահերից բացի այլ շահեր չունի։ Աշխատավորների բարեկեցության նկատ-



մամբ ցուցաբերվող հոգատարությունը նրա գործունեության գերագույն օրենքն է։

Սովետական ժողովուրդը միահամուռ կերպով հավանություն է տալիս պարտիայի և կառավարության բոլոր որոշումներին ու միջոցառումներին. դրանք համարում է իր սեփական, հարազատ գործը և անձնվիրաբար պայքարում դրանց կենսագործման համար։

Պարտիայի և ժողովրդի միասնությունը սոցիալիստական հասարակարգի հզորության հուսալի երաշխիքն է, կոմունիզմի հաջող կառուցման գրավականը։ Եվ, քանի դեռ անխախտ է այդ միասնությունը, մեզ համար վտանգավոր չէ ոչ մի թշնամի, ոչ ներքին և ոչ էլ արտաքին։

Կոմունիստական պարտիայի նկատմամբ համաժողովրդական սիրո և նվիրվածության վառ արտահայտություններից մեկն էլ նրա շարքերի աճն է։ Եթե 1917 թվականին Կոմունիստական պարտիայի շարքերում հաշվվում էր ընդամենը 240 հազար մարդ, ապա այժմ պարտիան միավորում է մոտ 8 միլիոն անդամ և անդամության թեկնածու։ Այդ բանը հատկապես ցայտուն կերպով դրսևորվեց քաղաքացիական պատերազմի տարիներին, լենինյան կոչի շրջանում, Հայրենական Մեծ պատերազմի տարիներին,

ժողովրդի և պարտիայի համար առավել դժվարին, ծանր ու կրիտիկական շրջանում։ Ժողովրդական մասսաների ղեկավարման ուղղությամբ Կոմունիստական պարտիայի հաջող գործունեության կարևորագույն պայմանը ժողովրդական լայն մասսաների հետ նրա անխզելի կապն է, պարտիայի գաղափարական ու կազմակերպական միասնությունը։

Ամբողջ սովետական ժողովուրդը միահամուռ դատապարտեց Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի հակապարտիական խմբի և նրանց հարած Շեպիլովի պառակտիչ ֆրակցիոն գործունեությունը։ Հակապարտիական այդ խումբը հանդես եկավ XX համագումարի գծի դեմ, միջազգային լարվածությունը թուլացնելու դեմ, աշխատավորների բարեկեցության ուղղությամբ ձեռնարկվող միջոցառումների դեմ, խոպան հողերը հերկելու դեմ, անասնաբուծական մթերքների արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու կոչի դեմ, արդյունաբերության կառավարումը վերակառուցելու և այլ կարևոր միջոցառումների դեմ։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումը (1957 թ.) մեկ անգամ ևս ցուցադրեց սովետական ժողովրդի սերտ համախմբվածու-



թյունը, անխորտակ միասնությունը իր հարազատ Կոմունիստական պարտիայի, նրա մարտական շտաբ՝ Կենտրոնական Կոմիտեի շուրջը։ Պարտիան համարձակ կերպով պայքար մղեց Ի. Վ. Ստալինի անձնավորության պաշտամունքի դեմ, որը մեծ վնաս հասցրեց կոմունիստական շինարարության գործին, դատապարտեց իր գործունեության վերջում նրա թույլ տված սխալները, նպատակ ունենալով բացառել նման սխալների կրկնվելու հնարավորությունը։ Պարտիան մեծ աշխատանք կատարեց պարտիական կյանքի լենինյան նորմաների, կոլեկտիվ ղեկավարման սկզբունքների, սոցիալիստական օրինականության խախտումները վերացնելու ուղղությամբ։

Այդ բոլոր միջոցառումները է՛լ ավելի ամրապնդեցին մեր պարտիան, է՛լ ավելի բարձրացրին նրա հեղինակությունը աշխատավոր մասսաների շրջանում։

Այս հանդիսավոր օրերին, սովետական ժողովուրդը հիացմունքով է նայում Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ իր անցած 40-ամյա ուղուն և հպարտանում է իր ազատ ու երջանիկ Հայրենիքի համար, սովետական բազմազգ պետության համար, սոցիալիզմի ու կոմունիզմի կա-

ռուցման գործում ձեռք բերած վիթխարի հաջողությունների համար։

Սովետական Միությունը գտնվում է իր ստեղծագործական ուժերի, ծաղկման ու վերելքի շրջանում, ընթանում է աննախընթաց վերելքի ուղիով։ Նա ունի այն ամենը, ինչ անհրաժեշտ է լիակատար կոմունիստական հասարակություն կառուցելու համար։ Աշխարհում չկա որևէ ուժ, որ կարողանա արգելակել սովետական ժողովրդի անհաղթահարելի առաջընթացը դեպի կոմունիզմ։ Այս բոլորի մեջ սովետական մարդիկ տեսնում են Կոմունիստական պարտիայի մեծագույն ծառայությունը և հոգատարությունը ժողովրդի բարօրության նկատմամբ։ Նրանք իրենց սիրո և երախտագիտության առաջին խոսքն ուղղելով պարտիային, իրենց մշտական պատրաստակամությունն են հայտնում այսուհետև նույնպես առաջ ընթանալու Կոմունիստական պարտիայի նշած ուղիով, կոմունիզմի ուղիով։

Մարքսիզմ-լենինիզմի դրոշով, Կոմունիստական պարտիայի առաջնորդությամբ առաջ դեպի կոմունիզմի հաղթանակը։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 40-ԱՄՅԱԿԻ ՄԱՍԻՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 40-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

### Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Պրոլետարիատի խնդիրների մասին տվյալ ռևոլյուցիայում, *Երկեր, հատոր 24, էջ 1—9, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ինչ է Սովետական իշխանությունը, *Երկեր, հատոր 29, էջ 295—296, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Հոկտեմբերյան ռևոլյուցիայի չորսամյա տարեդարձի առթիվ, *Երկեր, հատոր 33, էջ 37—48, Հայպետհրատ, 1952։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), Հայպետհրատ, 1953։*

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասնամյակի առթիվ (1917—1957) ՍՄԿՊ Կենտկոմի պրոպագանդայի ու ագիտացիայի բաժնի և ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի թեզիսները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի սեպտեմբերի 17-ի և 18-ի համարներում։*

## 2. ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

### Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Զեկուցում Արևելքի ժողովուրդների կոմունիստական կազմակերպությունների Համառուսաստանյան 2-րդ համագումարում, *22 նոյեմբերի 1919 թ., Երկեր, հատոր 30, էջ 174—190, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պրոլետարիատի խնդիրների մասին տվյալ ռևոլյուցիայում, *Երկեր, հատոր 24, էջ 1—9, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Հոկտեմբերյան ռևոլյուցիայի չորսամյա տարեդարձի առթիվ, *Երկեր, հատոր 33, էջ 37—48, Հայպետհրատ, 1952։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Հոկտեմբերյան ռևոլյուցիայի միջազգային բնույթը, *Երկեր, հատոր 10, էջ 271—284, Հայպետհրատ, 1949։*

## 3. ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆ Է

### Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Բոլշևիկները պետք է վերցնեն իշխանությունը, *Երկեր, հատոր 26, էջ 1—4, Հայպետհրատ, 1951։*



Վ. Ի. ԼԵՆԻՆ— Հոկտեմբերյան ռևոլյուցիայի չորսամյա տարեդարձի առթիվ, *Երկեր, հատոր 33, էջ 37—48, Հայպետհրատ, 1952։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Զեկուցում պատերազմի և խաղաղության մասին (ՌԿ(բ)Պ յոթերորդ համագումարը), *Երկեր, հատոր 27, էջ 87—116, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Զեկուցում պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956։*

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասունամյակի առթիվ (1917—1957) ՍՄԿՊ Կենտկոմի պրոպագանդայի ու ագիտացիայի բաժնի և ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի թեզիսները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի սեպտեմբերի 17-ի և 18-ի համարներում, գլուխ 5-րդ։*

## 4. ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆ ՄԵՐ ԲՈԼՈՐ ՀԱՂԹՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆ Է

### Գրականություն

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին (1903—1953), *Հայպետհրատ, 1953։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Զեկուցում պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956։*

Պարտիայի լենինյան միասնությունը անխորտակելի է, «Պրավդա»-ի 1957 թվականի հուլիսի 5-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի նույն թվականի հուլիսի 6-ի համարում։

### 5. ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆ ԱՆԴԱԴՐՈՒՄ ՀՈԳ Է ՏԱՆՈՒՄ ԺՈՂՈՎՐԴԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՊԱՀԱՆՋՄՈՒՆՔՆԵՐԸ ԼՐԻՎ ԲԱՎԱՐԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

#### Գրականություն


Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացումը, *ՍՄԿՊ XX համագումարին տված զեկուցումից, էջ 108—121, Հայպետհրատ, 1956։*

Հետպատերազմյան ժամանակաշրջանի սոցիալիստական շինարարության արդյունքները և սովետական ժողովրդի խնդիրները կոմունիզմի համար մղվող պայքարում, *Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասնամյակի կապակցությամբ հրապարակված թեզիսներից, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի սեպտեմբերի 18-ի համարում։*




### 6. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԾՆՈՒՆԴՆ Է

#### Գրականություն


Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ինչ է Սովետական իշխանությունը, *Երկեր, հատոր 29, էջ 295—296, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին, *Երկեր, հատոր 32, էջ 402—405, Հայպետհրատ, 1952։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Կեցցե՜ Սովետական Հայաստանը, *Երկեր, հատոր 4, էջ 458—459, Հայպետհրատ, 1948։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Վերածնված ժողովուրդը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի սեպտեմբերի 19-ի համարում։*


---

## СОДЕРЖАНИЕ

Стр.


**МАТЕРИАЛЫ ДЛЯ ДОКЛАДОВ**

40-летие Великой Октябрьской социалистической революции . . . . 1

**В ПОМОЩЬ АГИТАТОРАМ**

Темы и литература для бесед агитаторов о 40-й годовщине Великой Октябрьской социалистической революции . . . 45


---

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 19 1957 г.

ՎՖ 08943 Պատվեր 720 Տիրաժ 8510

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչու-
թյունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր
վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 50 կոպ.։